Պրոլետարներ բոլոր երկրների՛, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ. ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 24 (54)

ՀԽՍՀ ԺԿԽ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ — 1938

ՀՍՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«Խորհրդային Հայաստան»

---

ԲԱՑՎԱԾ Է 1939 Թ.
բաժանորդագրությունը

## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

*Լույս է տեսնում ամիսը 2 անգամ ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակությամբ*

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.

6 » . . 3 »

3 » . . 1 ռ. 50 կ.

*Առանձին համարը՝ 25 կոպ.*

*Բաժանորդագրվելու համար դիմել «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին։*

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 24 (54)



Հայկական ՍՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ ԶԻՆԵԼ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄՈՎ

Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմության համառոտ դասընթացի լույս տեսնելը և ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի վորոշումը «Կուսակցական պրոպագանդայի դրվածքի մասին» «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի» լույս ընծայման կապակցությամբ նշանակում են նոր ժամանակաշրջան կուսակցական պրոպագանդայի դրվածքի ու կազմակերպման ասպարեզում, յերկրի գաղափարական ամբողջ կյանքի նոր հզոր վերելք:

Մեր բոլշևիկյան կուսակցությունը միշտ հսկայական նշանակություն է տվել հեղափոխական թեորիային:

Լենինն ու Ստալինը բազմիցս մատնանշել են, վոր առանց հեղափոխական թեորիայի չի կարող լինել հեղափոխական շարժում:

Միայն մարքսիստական-լենինյան թեորիային տիրապետած կուսակցությունը կարող է վստահ կերպով առաջ շարժվել և առաջ տանել բանվոր դասակարգը: Վորովհետև բանվոր դասակարգի հեղափոխական թեորիայի, մարքսիստական-լենինյան թեորիայի ուժը հենց այն բանի մեջ է կայանում, վոր այդ թեորիան կուսակցությանը հնարավորություն է տալիս «կողմնորոշվել իրադրության մեջ, ըմբռնել շրջապատող դեպքերի ներքին կապը, նախատեսնելու դեպքերի ընթացքը և ճանաչել վոչ միայն այն, թե ինչպես և դեպի ուր են զարգանում դեպքերը ներկայումս, այլև այն, թե ինչպես և դեպի ուր են զարգանալու նրանք ապագայում» («Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմություն»):

Մեր կուսակցությունը աշխարհիս բոլոր մյուս կուսակցություններից միշտ տարբերվել է նրանով, վոր նա ունեցել է բանվոր դասակարգի առաջավոր, միակ գիտական թեորիա, մարքսիստական-լենինյան թեորիա: Բանվոր դասակարգի՝ բոլշևիկյան կուսակցության ղեկավարու-



թյամբ մղած հեղափոխական պայքարի վողջ պատմությունը կապված է պրակտիկայի վրա հիմնված թեորիայի հետ: Յեվ հենց այս պատճառով մեր յերկրի բանվոր դասակարգը բոլշևիկների կուսակցության առաջնորդությամբ հաղթեց իր բոլոր թշնամիներին և կառուցեց սոցիալիզմ:

ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի վորոշումն ամբողջ ուժով ընդգծում է մարքսիստական-լենինյան թեորիայի նշանակությունը և պարզաբանում է Կուսակցության պատմության դասընթացի՝ բոլշևիզմի գիտական այն պատմության էությունը, վորի մեջ «շարադրվել ու ընդհանրացվել է կոմունիստական կուսակցության հսկայական այն փորձը, վորին հավասարը չի ունեցել և չունի աշխարհիս վոչ մի կուսակցություն»:

ՀամԿ(բ)Կ պատմությունը լույս տեսնելուց հետո կուսակցությունը, ամբողջ յերկիրը առաջին անգամը ստացան կուսակցության պատմության գծով միասնական ղեկավարություն, ՀամԿ(բ)Կ պատմության ու մարքսիզմ-լենինիզմի հիմնական հարցերի պաշտոնական, Համ.

Կ(բ)Կ ԿԿ-ի կողմից տրված մեկնաբանություն: Կուսակցությունը ստացավ բոլշևիզմի նոր հզոր գաղափարական զենք, մարքսիզմ-լենինիզմի վերաբերյալ հիմնական գիտելիքների հանրագիտարան:

Կուսակցության՝ ընկեր Ստալինի ղեկավարությամբ և անմիջական մասնակցությամբ գրված պատմությունը պարզ, սեղմ ու հասարակ կերպով շարադրում և ընդհանրացնում է կոմունիստական կուսակցության, Լենինի-Ստալինի կուսակցության պայքարի ու հաղթանակների հսկայական փորձը:

ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը ստեղծվելուց հետո լիկվիդացիայի յե յենթարկվում այն վնասակար ճեղքվածքը, որ կար պրոպագանդայի ասպարեզում մարքսիզմի ու լենինիզմի միջև, վերջ է դրվում միասնական մարքսիստական-լենինյան ուսմունքի բաղկացուցիչ մասերի՝ դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի և լենինիզմի միջև արհեստականորեն ստեղծված յերկճեղմանը: ՀամԿ(բ)Կ պատմության դասընթացը ամբողջ ուժով մատնանշում է «Մարքսի ու Լենինի ուսմունքի անխզելի



միասնությունը, ամբողջականությունը և հաջորդականությունը, մարքսիզմ-լենինիզմի միասնությունը» և այն նորը, որ Լենինն ու Ստալինը մտցրել են մարքսիզմի մեջ, ընդհանրացնելով պրոլետարիատի՝ իմպերիալիզմի ու պրոլետարական հեղափոխությունների եպոխայում մղած դասակարգային պայքարի նոր փորձը:

Համ Կ(բ)Կ պատմության դասընթացը վերացրեց մարքսիզմ-լենինիզմի թեորիայի և կուսակցության պատմության մի շարք կարևորագույն հարցերի մեկնաբանման բնագավառում յեղած պարզեցումն ու գռեհկացումը: Ճշմարտորեն, պատմական կոնկրետ փաստերի հիման վրա ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը շարադրում է ՀամԿ(բ)Կ պատմությունը, ծավալելով մարքսիզմ-լենինիզմի հիմնական գաղափարները, ցույց է տալիս Մարքսի-Ենգելսի-Լենինի-Ստալինի ուսմունքի մեծ ուժը, մեր կադրերը դաստիարակելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հիման վրա, այդ կադրերը զինելով հանուն կոմունիզմի հետագա հաղթանակների պայքարի համար:

Ստեղծելով կուսակցության պատմությունը, Համկ(բ)կ կկ-ն յելել է այն բանից, վոր «առանց իմանալու մարքսիզմ-լենինիզմի թեորիան, առանց բոլշևիզմին տիրապետելու, առանց թեորետիկական իրենց հետամնացությունը հաղթահարելու, մեր կադրերը յերկու վոտքով կկաղան, վորովհետև սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառները ճիշտ կերպով ղեկավարելու խնդիրը պահանջում է, վոր պրակտիկները տիրապետեն մարքսիստական- լենինյան թեորիայի հիմունքներին, պահանջում է պրակտիկ գործունեյության հարցերը լուծելիս թեորիայով ղեկավարվելու հմտություն»:

Համկ(բ)կ պատմության դասընթացը մեր կադրերին տալիս է վստահելի, խնամքով ստուգված գաղափարական զենք, վորը գիտականորեն բաց է անում հասարակության զարգացման օրենքները, վորը սովորեցնում է այդ օրենքները կիրառել պրոլետարիատի հեղափոխական գործունեյությունը ղեկավարելու համար:

Համկ(բ)կ Կենտրոնական Կոմիտեն իր վորոշման մեջ յերևան է հանում պրոպագանդիստական աշխատանքի արմա-



տական թերությունները և ցույց է տալիս այդ աշխատանքը վերակառուցելու ուղիները:

Համկ(բ)կ կկ-ի վորոշումը վերջ է տալիս պրոպագանդայի գործում յեղած տնայնագործականությունն ու անկազմակերպվածությունը և հսկայական բարձրության վրա յե դնում մեր կադրերի թեորետիկական պատրաստության գործը:

Համկ(բ)կ կկ-ի վորոշումը կուսակցական պրոպագանդայի դրվածքի մասին ամբողջովին վերաբերվում է նաև մասսայական- քաղաքական ագիտացիային:

Կենտրոնացման բացակայությունը և այստեղից բխող տնայնագործականությունը և անկազմակերպվածությունը մասսայական- քաղաքական ագիտացիայի հիմնական թերությունն է: Համկ(բ)կ կկ-ն իր վորոշման մեջ մատնանշել է, վոր մարքսիզմ- լենինիզմի պրոպագանդայի ասպարեզում գլխավոր, վճռողական զենքն է մամուլը՝ ժուռնալները, լրագրերը, բրոշյուրները: Վորովհետև «մամուլը հնարավորություն է տալիս այս կամ այն ճշմարտությունը մի անգամից բոլորի սեփականությունը դարձնել»:

Տպագիր ագիտացիայի դերը հսկայական է: Մամուլի միջոցով կուսակցությունը ամեն օր խոսում է ժողովրդի հետ: Ագիտատորը բոլշևիկյան տպագիր խոսքը մասսայական-քաղաքական ագիտացիայի ասպարեզում պետք է օգտագործի ավելի լայն կերպով, քան այդ կատարվել է առաջ: Այս խնդրի իրագործումը չի կարելի հանգեցնել միայն ընթերցումներ անցկացնելուն: Պետք է լրագրեր, ժուռնալներ, բրոշյուրներ ինքնուրույն կարդալու ճաշակ պատվաստել, հանրամատչելի կերպով պարզաբանելով այս կամ այն անհասկանալի հարցը:

Անհրաժեշտ է վերջ տալ զրույցների, ընթերցումների ձևական-բյուրոկրատական ռեգլամենտացիային: Հարկավոր է ավելի լայն կերպով գործադրել ակտուալ քաղաքական թեմաների վերաբերյալ դասախոսությունները, պատասխանել հարցերին, վորպեսզի զրույցները, դասախոսությունները, ընթերցումները և այլն անցնեն աշխույժ, հետաքրքիր կերպով: Մեր կուսակցական մամուլը լավագույն ագիտատորների փորձը պետք է դարձնի բոլոր ագիտատորների սեփականությունը:



Մինչդեռ կուսակցական շատ կազմակերպություններ հետաքրքրվում են ամենից առաջ «ընդգրկումով» և անց կացված զեկուցումների, զրույցների, ընթերցումների քանակով և ընկնելով զրույցների ու ընթերցումների քանակի հետևից աչքաթող են անում գլխավորը, այն է՝ մասսայական-քաղաքական ագիտացիայի ակտուալությունը: Զրույցները, դասախոսությունները, զեկուցումները հաճախ անց են կացվում շտապ կերպով, առանց հարկ յեղած պատրաստության:

Այս բոլորը կուսակցական կազմակերպությունների կողմից ագիտատորների հետ կատարած թույլ աշխատանքի, ագիտատորների կողմից իրենց քաղաքական մակարդակի բարձրացման վրա անբավարար աշխատելու հետևանք է:

ՀամԿ(բ)Կ պատմությունը կադրերի գաղափարական դաստիարակության մի հզոր զենք է, կուսակցական և անկուսակցական բոլշևիկների քաղաքական գիտությունը բարձրացնելու կարևորագույն միջոց է: Կուսակցության պատմությունն այդ մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ: Ու-

րեմն, պարզաբանելով ընթացիկ քաղաքական դեպքերի իմաստն ու նշանակությունը, մասսաները մոբիլիզացիայի ենթարկելով կուսակցության ու կառավարության որոշումները իրագործելու համար, ագիտատորը իր ամբողջ աշխատանքի մեջ պետք է ղեկավարվի Համկ(բ)Կ պատմության համառոտ դասընթացով: Հսկայական կարևորություն ունեցող այս խնդիրը իրագործելու համար, ամեն մի ագիտատոր պետք է սիստեմատիկ կերպով ուսումնասիրի կուսակցության պատմությունը, պետք է տիրապետի բոլշևիզմին: Համկ(բ)Կ պատմության դասընթացը պետք է դառնա ամեն մի ագիտատորի սեղանի գիրքը:

Համկ(բ)Կ ԿԿ-ն մատնանշեց, որ արհամարհական վերաբերմունքը դեպի խորհրդային ինտելիգենցիան նշանակում է «ամենավնասակար ձևով անցկացնել մեր խորհրդային ինտելիգենցիայի վրա այն հայացքներն ու վերաբերմունքը դեպի ինտելիգենցիան, որոնք տարածված են եղել նախահեղափոխական ժամանակաշրջանում, երբ ինտելիգենցիան կալվա-



ծատերերի ու կապիտալիստների ծառայության մեջ էր գտնվում»:

Համկ(բ)Կ ԿԿ-ն այսպիսի հակաբոլշևիկյան վերաբերմունքը դեպի խորհրդային ինտելիգենցիան դատապարտեց որպես վայրենի ու խուլիգանական վերաբերմունք, որը վտանգ է ներկայացնում խորհրդային պետության համար:

Մեր ինտելիգենցիան, որը իր բոլոր արմատներով կապված է բանվոր դասակարգի ու գյուղացիության հետ, որը խորհրդային իշխանության տարիներում է աճել, կազմում է պետական ապարատի այն կադրերը, որոնց օգնությամբ բանվոր դասակարգն ու գյուղացիությունը կառավարում են երկիրը: «Անհրաժեշտ է հասկանալ— մատնանշում է իր որոշման մեջ Համկ(բ)Կ ԿԿ-ն, որ ինտելիգենցիայի շարքերում, մեր կադրերի շարքերում քաղաքական աշխատանքի հենց լքվածությունը հասցրեց այն բանին, որ մեր կադրերի մի մասը, որը կուսակցության քաղաքական ազդեցությունից դուրս է և գաղափարական կոփվածությունից զրկված լինելով, քաղաքականապես

շղվեց, խճճվեց և դարձավ տարբերկրյա հետախուզությունների ու նրանց տրոցկիստական-բուխարինական ու բուրժուա-նացիոնալիստական գործակալության զոհը»:

Մասսայական-քաղաքական ագիտացիայի գործում կարևորագույն թերություն է հանդիսանում արհամարհական վերաբերմունքը դեպի մեր խորհրդային ինտելիգենցիայի քաղաքական դաստիարակման գործը: Կուսակցական շատ կազմակերպություններ իրենց մասսայական-քաղաքական, ագիտացիոն աշխատանքի մեջ միանգամայն աչքաթող են արել մեր խորհրդային ինտելիգենցիան: Դրանով արտահայտվել է արհամարհական-մեծամիտ, հակալենինյան վերաբերմունքը դեպի կուսակցական ու անկուսակցական ինտելիգենտը վորպես յերկրորդ տեսակի մարդու: «Խորհրդային ինտելիգենցիայի մարքսիստական- լենինյան դաստիարակության խնդիրը բոլշևիկների կուսակցության ամենաառաջնակարգ և կարեվորագույն խնդիրներից մեկն է»: Անհրա-



ժեշտ է մեր ինտելիգենցիայի շարքերում, կուսակցական, կոմյերիտական, խորհրդային, տնտեսական, կոոպերատիվ, առևտրական, պրոֆմիութենական, գյուղատնտեսական, լուսավորական, ռազմական կադրերի, այսինքն կուսակցական, սովետական և կոլտնտեսական ապարատի կադրերի շարքերում ամեն օր մասսայական- քաղաքական ագիտացիա մղել, կադրերը դաստիարակել մարքսիզմ- լենինիզմի վոգով:

Մարքսիզմ- լենինիզմի պրոպագանդան բոլշևիկյան կուսակցության հարազատ գործն է: «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը— ասվում է Համ. Կ(բ)Կ ԿԿ-ի պատմական վորոշման մեջ— սկիզբ է դնում մեր կուսակցության ու խորհրդային ժողովրդի կյանքում նոր հզոր գաղափարական-քաղաքական վերելքի:

Տիրապետելով մարքսիզմ- լենինիզմի թեորիային, վորը զինում է հասարակական զարգացման որենքների գիտությամբ, մեր կադրերը կդառնան իսկապես անպարտելի և այդ թեորիայի դրոշի տակ,

Լենինի- Ստալինի կուսակցության ղեկավարությամբ ամբողջ խորհրդային ժողովուրդն ե՛լ ավելի հաջողությամբ կառնեն դեպի կոմունիզմի հաղթանակը»։

Ագիտատորների խնդիրն է լայն կերպով պարզաբանել ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի վորոշումը, վորը կուսակցական պրոպագանդայի մարտական ծրագիրն է։



## ԾՆՆԴՅԱՆ ՏՈՆԻ ԱՌԱՍՊԵԼԻ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԷՅՈՒԹՅՈՒՆԸ

# „ՔՐԻՍՏՈՍԻ ԾՆՆԴՅԱՆ" ՏՈՆԻ ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ՌԵԱԿՑԻՈՆ ԴԵՐԸ

### ԶԵԿՈՒՑՄԱՆ ՆՈՏԱՍԿԸ

Ցույց տալ, վոր «Քրիստոսի ծննդյան» ծագման մասին տերտերական բացատրությունը կեղծ է,— վոր Քրիստոսի մասին ավետարաններում յեղած ծննդյան պատմությունները՝ առասպելներ են, վոր իրեն՝ Քրիստոսի անձնավորությունը հորինված է, վոր ծննդյան տոնը ծագել է «հեթանոսական» մի շարք տոների փոխառության ու քրիստոնեական վերամշակման հետեվանքով և, վոր այդ տոնն իր

պատմության ամբողջ ժամանակամիջոցում կատարել և կատարում է ռեակցիոն դեր:

## ԶԵԿՈՒՑՄԱՆ ՊԼԱՆԸ

1. Ծննդյան պատմությունները Քրիստոսի մասին և դրանց սնանկությունը:
2. Քրիստոսի վերաբերյալ ծննդյան հեքիաթների հեթանոսական և հրեական աղբյուրները:
3. Հիմնական փաստարկումներն՝ ընդդեմ Քրիստոսի պատմականության:
4. «Քրիստոսի ծննդյան» տոնի ծագումը:
5. Հին սլավոնների և այլ ժողովուրդների հավատալիքներից մնացած մնացորդները «Քրիստոսի ծննդյան» տոնում:
6. Քրիստոսի ծննդյան ռեակցիոն դերն անցյալում և այժմ:

## ԶԵԿՈՒՑՄԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

1. Քրիստոնեաների մոտ «Քրիստոսի ծնունդը» գլխավոր կրոնական տոների շարքն է դասվում: Այդ հիմնավորելու համար, յերկեղեցականները վկայակոչում են Մաթևոսի և Ղուկասի ավետարանա-



կան պատմությունները՝ կույս Մարիամից հրաշքով Հիսուսի ծնվելը՝ սուրբ հոգու շնորհիվ: Սակայն այս պատմություններն ակնհայտորեն հնարովի բաներ են՝ առասպելներ, վորոնք հակասում են մեկը մյուսին, յերբ նկարագրում են, թե վորտե՞ղ, յե՞րբ և ինչպե՞ս է, իբր թե, ծնվել Քրիստոսը:

Այսպես, օրինակ՝ Մաթեվոսը Քրիստոսի ծննդավայր քաղաքն անվանում է հարավային Բեթղեհեմը, իսկ Ղուկասը՝ հյուսիսային Նազարեթը: Մաթևոսի ասածով՝ Հիսուսը ծնվել է հրեական թագավոր Հերովդեսի կառավարության տարիներին: Իսկ Ղուկասն ասում է, վոր այդ յեղել է այն ժամանակ, յերբ Պաղեստինում մարդահամար էր կատարում Հռոմի չինովնիկ Քվիրինոսը: Բայց Հերովդեսի մահվանից մինչև Քվիրինոսի մարդահամարը տասը տարի յե տեվել: Հիսուսը չէր կարող ծնվել յերկու անգամ՝ Հերովդեսի օրոք և տասը տարի հետո՝ Քվիրինոսի օրոք:

Մաթևոսն ու Ղուկասը նմանապես հակասում են Քրիստոսի ծննդյան մասին իրենց նկարագրություններում:

 

Մատթեոսը պատմում է, որ Քրիստոսն իբր թե ծնվել է իր ծնողների տանը․ Յերկնքում փայլփլեց հրաշալի աստղը, մանուկին յերկրպագելու յեկան Արևելքից՝ իմաստուններ, հարուստ ընծաներով։ Հերովդեսը յերկյուղ կրեց իր իշխանության համար, ցանկացավ ոչնչացնել մանուկին և Բեթղեհեմի ոկրուգի բոլոր մանուկներին կոտորեց, բայց Քրիստոսի ծնողներն իր հետ միասին փրկվեցին՝ Յեգիպտոս փախչելով և այնտեղ եյին ապրում, մինչև թագավորի մեռնելը (1–2 գլուխ)։ Իսկ Ղուկասի մոտ Քրիստոսն իբր թե ծնվել է ինչ որ դաշտում, քաղաքի մոտ, անասունների մսուրում, որջանում եյին նրան միայն հրեշտակներն ու աղքատ հովիվները, մանուկին ոչ ոք չէր հալածում և ծնողները նրա հետ ամեն տարի ապահով կերպով այցելում եյին Յերուսաղեմն ու տաճարը։

Այս բոլորն այն մասին են խոսում, որ Քրիստոսի ծննդյան վերաբերյալ ավետարանական պատմություններում մենք գործ ունենք կրոնական հորինումների, առասպելների հետ։ Իսկ ինչ վերաբերում է այդ առասպելների նյութին, ապա



ավետարանիչները դրանք փոխ են առել այն ժամանակվա հրեական և հեթանոսական ասմունքներից, ինչպես և հին կտակարանային գրականությունից՝ «աստվածաշնչից»։

2․ Հեթանոսական աշխարհում գոյություն ունեյին զանազան աստվածների, հերոսների և պատմական գործիչների մասին շատ ասմունքներ, որ իբր թե նրանք անարատ, առանց տղամարդկանց մարմնական մասնակցության, սաղմնավորվել են իրենց կույս-մայրերից, ծնընդյան ժամանակ հալածանքների յեն յենթարկվել և փրկվել են՝ հրաշքով։

Այսպես, օրինակ՝ հին յեգիպտացիները պատմում եյին, որ իրենց աստվածուհի Իզիդան կույս վիճակում հրաշքով հղիացել և ծննդաբերել է իր որդի «փրկիչ» Հորին և նրա հետ միասին փախչելով ազատվել է Սեթ կոչված նենգ աստվածության որոգայթներից։ Ասորեստանի թագավոր Սարգոնը, որն ապրում էր մեր թվականությունից առաջ, 3-րդ հազարամյակի մեջերում, մի արձանագրության մեջ իր մասին պատմում է, թե մայրն անարատ կերպով ծննդաբերել է

նրան մի ծածուկ տեղում և հարկադրված է յեղել գետը գցել նրան, բայց սա փրկվել է և աստվածուհի Իշտարի օգնությամբ գահի՝ թագավորության է հասել: Պարսկական-իրանական առասպելների համաձայն, «լուսաշող» Միհր աստվածը «հրաշքով» դուրս յեկավ իր կույս մոր՝ հողի աստվածուհի Անահիտի ծոցից, այրի մեջ, դեկտեմբերի 25-ին և նրան յերկրպագելու յեկան հովիվները՝ հարևան դաշտից: Այս բոլոր դեպքերում կույս մայրերից հրաշքով ծննդաբերված մանուկների հայրերն իբր թե աստվածներ են յեղել:

Հռոմեացիները հենց այսպիսի ծնունդ էյին վերագրում իրենց «փրկչին»—կայսր Օգոստոսին, վորի մայրը նրան իբր թե ծննդաբերել է Ապոլլոն աստծուց, իսկ Ծերակույտը (Սենատը), իշխանության համար յերկյուղ կրելով, ջանում եր վոչնչացնել այդ տարին ծնված բոլոր յերեխաներին (Սվետոնիուս «Տասներկու կայսրների կենսագրությունները: Օգոստոս»): Ֆ. Էնգելսը նշել է, վոր «...Արդեն Օգոստոսը հոգ տարավ, վորպեսզի վոչ



միայն աստվածամարդը, այլև, այսպես կոչված՝ անարատ հղիացումները պաշտոնական պետության կողմից հրամանագրված ֆորմուլաները: Նա վոչ միայն պահանջում եր Կեսարին և հենց իրեն՝ աստվածային մեծարանք մատուցել, այլև կարգադրություն արեց ամենուրեք տարածել, թե նա՝ Օգոստոս Կեսարը, «աստվածային», իր մարդ-հոր վորդին չէ, այլ մայրը նրան սաղմնավորել է Ապոլլոն աստծուց» (Էնգելս, «Բրունո Բաուերը և վաղ քրիստոնեյությունը»: Յերկեր, հատ. 15, եջ՝ 604 ռուս. հրատ):

Անշուշտ, ավետարանիչները և առհասարակ վաղեմի քրիստոնեաները Հիսուսի ծննդյան վերաբերյալ իրենց ասմունքների հիմնական առասպելական նյութը փոխառան այլ կրոններից, սակայն այն յենթարկել են իրենց վերամշակմանը: Նրանք աշխատում էյին ցույց տալ, վոր Հիսուս-Քրիստոսն աստվածորդի յե յեղել, աստվածամարդ և այն խոստացյալ «փրկիչը», վորի մասին իբր թե գուշակել են դեռ հին կտակարանային մարգարեները: Քրիստոսն իբր թե ծնվել է բոլոր մարդկանց փրկելու համար և ընդհա-

նուր «խաղաղություն յերկրիս յերեսին» հաստատելու համար, այսինքն՝ ստրուկների և չքավորության մասսաների և չահագործողների կառավարող կլիկի միջև մղվող դասակարգային պայքարին վերջ տալու համար:

3. Յեվ այսպես, Քրիստոսի մասին յեղած ավետարանական պատմությունները պարզվեց, վոր հրեական ու հեթանոսական զանազան առասպելաբանական նյութերից ստեղծված առասպելներ են: Հենց այդպիսի առասպելներ են նաև ավետարանական Քրիստոսի մասին առհասարակ բոլոր ասմունքները՝ նրա գործունեության, մահվան և հարության մասին: Դեռ ավելին: Պատմագրությունը հաստատել է, վոր հենց Քրիստոսն ինքն էլ վաղեմի բոլոր աստվածների նման հնարված անձնավորություն է: Համառոտակի ծանոթանանք այն փաստարկումներին, վորոնք Քրիստոսի պատմության դեմ գիտությունն առաջադրում է:

Քրիստոնեության սկզբնավորման շրջանն ընկնում է 1–3-րդ դարերում: Այդ ժամանակներում հռոմեական կայսրության մեջ ապրում էյին մոտավորապես յերկու



տասնյակ խոշոր, վոչ քրիստոնյա գրողներ, պատմաբաններ, փիլիսոփաներ, բանաստեղծներ և ուրիշներ: Որինակ՝ այդ դարերին են վերաբերվում հույն պատմաբան Պլուտարքոսի (46—120), հռոմեացի փիլիսոփա Սենեկայի (մեռել է 65 թվ.), հռոմեական բանաստեղծներ՝ Պերսիոսի (31–63), Մարցիալի (40–103) և Յուվենալիսի (52–110), հռոմեական պատմաբաններ՝ Տակիտուսի (54–119), Պլինիոս Կրտսերի (61–113), Սվետոնիուսի և մի շարք ուրիշների գործունեությունը: Յեղել են այն ժամանակ նաև խոշոր հրեական գրողներ՝ Փիլոն փիլիսոփան (մեռել է մոտավորապես 54 թվին), պատմաբաններ՝ Հովսեփ Ֆլավիոսը (37–100) և Յուստը (դր. 60–80): Իրենց յերկերում այս բոլոր հեղինակները նկարագրել են իրենց ժամանակվա զանազան գործիչների, դեպքեր նրանց կյանքից, նրանց գործունեության ժամանակն ու տեղը: և այլն: Այդ գրողները Քրիստոսի մասին վոչ մի բառ չեն հիշում:

Իսկ ապա իրենք՝ հին քրիստոնեաներն ի՞նչ էյին պատմում Քրիստոսի մասին, ի՞նչ տեսակ էյին նրանք պատկերացնում:

Դեռևս մինչ ավետարանները, քրիստո-

նեաների կողմից գրված են յեղել «Հայտնություն Հովհաննու»-ն (մոտավորապես 69 թվ.) և «Գործք Պողոս առաքյալ»-ն (1 դարի վերջին): Ցեվ աՀա, Քրիստոսը «Հայտնության» մեջ պատկերված է ոչ որպես մարդ, ոչ որպես պատմական գործիչ, այլ որպես մի հեքիաթային եակ, «երկնային փրկիչ» և արեգակնազգեստ կնոջից երկնքում ծննդաբերված «յոթնեղջերային գառն» (13 գլ.): Իսկ «գործում» շատ մշուշապատ կերպով խոսվում է, որ Քրիստոսն ինչ որ մի տեղ, ինչ որ մի ժամանակ իջել է երկնքից երկիր, ընդունել է թափանցիկ, մարդկային թվացող մարմին, որպես թե ձևի համար մեռել է, հարություն առել և կրկին երկինք վերադարձել:

Հետևապես, 1-ին դարում իրենք՝ քրիստոնեաները Քրիստոսին դեռևս չէին համարում և չէին պատկերում որպես ռեալ մարդ, հասարակական գործիչ, պատմական դեմք: Նրանք նրան իրենց պատկերացնում էին միայն որպես «երկնային փրկիչ» և «աստվածամարդ»,



այսինքն՝ երևակայական (ֆանտաստիկ) աստվածություն:

Միայն ավետարաններում, որոնք գրվել են երկրորդ դարի առաջին կեսում, Քրիստոսն առաջին անգամ հանդես է գալիս կարծես թե մարդու և պատմական գործչի դերում արդեն, բայց այն էլ միայն «կարծես թե», չէ՞ որ նա այնտեղ էլ պատկերացված է այնուամենայնիվ, որպես «աստվածամարդ», այսինքն միաժամանակ որպես աստված և որպես մարդ և հենց այս մեկ հանգամանքը վկայում է, նրա անվան ու կերպարի (ոբրազի) հետ կապված իրադրությունների հեքիաթային, անհավատալի լինելու բնույթի մասին:

Ավելին: Քրիստոսի և նրա երկրային կյանքի մասին ավետարանական պատմությունների ամբողջովին բաղկացած են պատմական սխալներից, անհեթեթություններից և հրաշքների ակնհայտ հորինվածքներից և այլն: Սրա օրինակները (փաստերը) մենք տեսանք Քրիստոսի ծննդյան մասին առասպելները վերլուծելիս: Իսկ ավետարաններից բացի, Քրիստոսի վաղեմի գոյության վերա-

բերյալ վոչ մի այլ տվյալ չունեն յեկեղեցականները:

Քրիստոսի մասին քրիստոնեությունից դուրս վկայություններ չլինելը, Քրիստոսի՝ «Հայտնություն Հովհաննու առաքելոյում» և «Գործք Պողոս առաքյալ»-ում արված ակնհայտ յերեվակայական կերպարը և քրիստոսի վերաբերյալ ավետարանական բոլոր պատմածների առասպելաբանական բնույթը, ապացույց են, վոր Քրիստոսն իսկապես յերբեք չի յեղել, նա հորինված, հեքիաթային դեմք է:

4. Սակայն, քանի վոր Քրիստոսը հեքիաթային դեմք է, իսկ նրա ծննդյան ավետարանական պատմությունները՝ ակնհայտ առասպելներ, ապա ինչպե՞ս է այս դեպքում, ծագել «Քրիստոսի ծննդյան» տոնը:

Այս տոնը քրիստոնեաների յեկեղեցական արարողությունում յերեվան է գալիս միայն չորրորդ դարի կեսերին: Մինչ այդ, քրիստոնեաներն ունեյին Հիսուսի աստվածահայտնության- մկրտության- ծննդյան յերեքպատիկ տոն, վորը նրանք կատարում եյին հունվարի 6-ին և փոխ եյին



առել յեգիպտական կրոնից: Բանն այն է, վոր յեգիպտացիներն ունեյին Օզիրիսի՝ բուսականության աստվածության «հայտնության և ծննդյան» ամեն տարվա խոչոր հունվարյան տոն: Այդ տոնն արտահայտվում էր Նեղոս գետի ջուրն իջնելուց հետո դաշտերում առաջին կանաչի յերեվալը, այդ տոնակատարությունը զուգակցում էր գետի ջուրը գինու ծիսակատարությամբ, այսինքն՝ հացահատիկների բերքն ապահովելու համար ջրի մոգական նվիրագործությամբ:

Յեգիպտոսում ապրող քրիստոնեաները փոխ առան այդ տոնը 2-րդ դարում և այն կապեցին Հիսուսի մկրտության վերաբերյալ ավետարանական հեքիաթների հետ, յերբ Հիսուսն իբր թե հրաշքով «ծնվել ու հայտնվել է» աշխարհին, վորպես աստվածային փրկիչ: Յեգիպտական քրիստոնեաների որինակին հետևեցին մյուս վայրերի քրիստոնեաները և սկսեցին նույնպես կատարել այդ հունվարյան տոնը: Այսպես շարունակվեց մինչև չորրորդ դարի կեսերը: Այս ժամանակաշրջանում Հռոմի և ընդհանրապես հռոմեական կայսրության արևմտյան կեսի

քրիստոնեաները փոխ առան նույնպես արեգակնային Միհր աստծու «հեթանոսական», ծագումով պարսկական (իրանական) «ծննդյան տոնը», վորը կատարվում եր դեկտեմբերի 25-ին և արտահայտում եր ձմեռը գարնան փոխվելուն, գարնանային աշխատանքների համար ծիսակատարային նախապատրաստությունը: Միհրի ծնունդը Հռոմեյական կայսրության մեջ այն ժամանակ պետական տոն եր և կայսրերի կողմից ակտիվ կերպով պաշտպանվում եր:

Քրիստոնեական յեկեղեցին 4-րդ դարում սերտ կապ հաստատեց կայսերական իշխանության հետ, ըստ ամենայնի պաշտպանում եր այդ իշխանությունը, ջանում եր վոչնչացնել «հեթանոսական» կրոնները և միևնույն ժամանակ նրանցից փոխ եր առնում զանազան ծիսային և այլ տարրեր, վորպեսզի դրանք վերամշակեր իր ձևով, և դրանք ոգտագործեր իր շահերի համար: Յեվ ահա մյուսների թվում նա այն ժամանակ ընդունեց և 354 թվին պաշտոնապես իր որացույցի մեջ մտցրեց Միհրի դեկտեմբերյան «ծնունդը», վորն առանց այն ել տոնվում եր շատ



քրիստոնեաների կողմից: Այդ տոնը պատմականորեն հիմնավորելու համար յեկեղեցականներն սկսեցին վկայակոչել Մաթեվոսի և Ղուկասի հորինած՝ ծննդենական հեքիաթները: Իսկ ինչ վերաբերում ե հունվարյան տոնին, ապա այն հայտարարեցին միայն վորպես մկրտության ու աստծո հայտնության տոն:

Քրիստոսի դեկտեմբերյան «ծննդյան» հետագա պատմությունը բարդ չի յեղել: Հռոմեյական յեկեղեցին, վորը 4-րդ դարում Հռոմի կայսրության վաղեմի մայրաքաղաքի քաղաքական դերին համապատասխանորեն խոշոր դեր եր կատարում քրիստոնեական աշխարհում, նոր տոնն ու նոր թվագրությունը հետզհետե փաթաթեց՝ սկզբում Արևմուտքի, այնուհետև՝ նաև Արևելքի մնացած յեկեղեցիների վզին: Հրաժարվեց այն ընդունել միայն հայկական յեկեղեցին, վորը մինչև այժմ ել հունվարի 6-ին ե կատարում Հիսուսի աստվածահայտնություն— մկրտություն, ծննդյան յերեքպատիկ տոնը:

Իսկ ինչ վերաբերում ե թվականությունը Քրիստոսի ծննդից սկսած հաշվելուն, ապա քրիստոնեական այդ թվա-

գրությունն առաջարկվեց միայն 4-րդ դարում: Մինչև այդ, քրիստոնեաները տարբեր մարզերում ու երկրներում պաշտպանում էին տեղական թվականությունը: Օրինակ՝ Եգիպտոսի քրիստոնեաները պաշտպանում էին հույն աստղաբաշխ Պտղեմեոսի մտցրած Նաբոնասարի թվականությունը»: Շատերը տարիները հաշվում էին երրորդ դարի հռոմեական կայսր՝ «Դիոկղետիանոսի թվականությամբ»: Մի քանիսները, հրեաների հետ միասին, տարիները հաշվում էին «աշխարհի արարչագործությունից»: 332 թվականին հռոմեական վանական Դիոնիսիոս կրտսերն առաջարկեց տարիները սահմանել «Քրիստոսի ծննդից» և արհեստականորեն հաշվարկեց այդ ծննդյան տարեթիվը: Այս թվականությունը երկար ժամանակ չէր պաշտպանվում և գործածության մեջ մտավ միայն 15-րդ դարում: Գերմանիայում ու Ֆրանսիայում այն կիրառեցին 16-րդ դարում, Անգլիայում՝ 18-րդ դարում, Ռուսաստանում այն կիրառեց Պետրոս 1-ը՝ 1700 թվից:

5. Երբ քրիստոնեությունը 10-րդ դա-



րից սկսած տարածվեց Ռուսաստանում, ապա այն այստեղ հետզհետե սկսեց միաձուլվել հին սլավոնների տեղական կրոնի հետ և նրանից փոխ առավ զանազան տարրերի և ծեսերի մասսա: Դեկտեմբերյան ծննդյան տոնը Ռուսիայում միաձուլվեց սլավոնների տեղական ձմեռային «Ջրօրհնեքի» բազմօրյա տոնակատարության հետ: Այստեղից, այս Ջրօրհնեքից Քրիստոսի «ծննդյան» տոնի մեջ անցան մի ամբողջ շարք ծիսակատարություններ, նախապաշարմունքներ ու հավատալիքներ:

Իրենց ձմեռային տոնակատարության օրերին սլավոններն իրենց, բնակարանների և տնտեսության մոգական «սրբագործումն» էին կատարում «անմաքուր ուժից»: Նախնիքների վոգիներին ծիսակատարային հյուրասիրություն էին մատուցում: Տունն էին ներս բերում խրձեր, հասկեր և խոտ՝ պտղաբերության բուսական վոգիներին այնտեղ հրավիրելու համար, սերմացու հացահատիկի վրա կախարդական հմայում էին կատարում՝ բերքն ապահովելու համար, ծպտվում էին չար վոգիներին ահաբեկելու համար և գուշակում էին ապագան:

Ծննդյան տների այս բոլոր ձևերը քրիստոնեական վորոշ մշակման յենթարկվեցին և վերածվեցին հավատացյալների իրենց բնակարանները և անասունները դիվային «պղծությունից» «սրբագործելու», ծիսային ընտանեկան ընթրիք սարքելու, «տան չարքերի», «բակի չարքերին», «ձմեռ պապին» և այլ վոգիներին հաճիկով հյուրասիրելու, տան առաջավոր անկյունը և սեղանը խրձերով, հասկերով ու խոտով զարդարելու, «Քրիստոսին փառաբանելու» և զատկական տնաշրջագայման յերգեր յերգելու, սերմացվի որհնության «ծպտագեստավորվելու» գուշակություններ անելու և այլ սովորությունների:

6. Այսպիսով, ծննդյան տոնը հավատացյալների յեկեղեցական արարողության մեջ և կենցաղում, հիմնականում հանդիսանում է քրիստոնեական և սլավոնական զանազան անհեթեթ հավատալիքների, ծեսերի և սովորությունների մի. խայտաճամուկ խառնուրդ: Այս տոնը միշտ ռեակցիոն դեր է կատարել:

Խորհուրդների Համամիութենական 2-րդ համագումարում, 1924 թ. հունվարի



24-ին, ընկեր Ստալինն իր ճառում ասել է.

«Ծանր ու անտանելի եր բանվոր դասակարգի վիճակը: Տանջալի ու ծանր են աշխատավորների տառապանքները: Ստրուկներ և ստրկատերեր, ճորտեր և ճորտատերեր, գյուղացիներ և կալվածատերեր, բանվորներ և կապիտալիստներ, կեղեքվողներ և կեղեքիչներ,— այդպես եր կառուցվում աշխարհը դարերից ի վեր, այդպիսին նա մնում է և այժմ յերկրների ահագին մեծամասնության մեջ: Աշխատավորները դարերի ընթացքում տասնյակ ու հարյուրավոր անգամներ փորձել են իրենց ուսերից վայր գցել կեղեքիչներին և իրենց դրության տերը դառնալ: Բայց յուրաքանչյուր անգամ, ջախջախված ու անարգված, նրանք հարկադրված են յեղել նահանջել, սրտի խորքում պահելով վիրավորանքն ու նվաստացումը, զայրույթն ու հուսահատությունը և հայացքներն ուղղելով անծանոթ յերկինքին, վորտեղ նրանք հույս ունեյին փրկություն գտնելու: Ստրկության շղթաները մնում եյին նույնությամբ կամ հին շղթաները փոխարին-

վում էյին նորերով, վորոնք նույնքան ծանր ու ստորացուցիչ էյին»:

Լենին– Ստալին «Ընտիր յերկեր», մի հատորյակ, Ի. Ստալին՝ «Լենինի մահվան առթիվ» արտասանած ճառից, էջ 21, Կուսհրատ, 1937 թ.:

Հուսահատության և «յերկնային» ոգնության վրա ունեցած հույսի այս զգացմունքները Ռուսաստանում, Ցարիզմի դարաշրջանում, յեկեղեցականներն ոգտագործեցին, վորպեսզի իրենց ռեակցիոն մշակմանը յենթարկեն թշվառացած աշխատավորական մասսաներին: «Ծննդյան» որերին, ինչպես նաև մյուս տոներին, նրանք աշխատավորների առաջ ուժեղ թափով զարգացնում էյին յերկրի վրա Քրիստոսի՝ «մեղանչական մարդկության քավության» համար, նրան «փրկության» նոր ուղիներ ցույց տալու համար ծնվելու մասին իրենց ուսմունքը:

Այս ուսմունքի համաձայն, աշխատավորական մասսաների սոցիալական ճնշվածությունը, իրավազրկությունը և աղքատությունը ճորտատիրական ու կապիտալիստական հասարակարգերում, իբր թե



աստծու առաջ նրանց մեղավոր ու հանցավոր լինելու հետեվանքն են և վոչ թե շահագործող դասակարգերի տիրապետության հետեվանքը: Այդ մասսաների համար իրենց ծանր դրությունից ռեալ յելք իբր թե չկա և չի կարող լինել. այդ դրությունը սահմանված է՝ աստծու՝ իր կողմից և այն փոխել ի վիճակի չեն մարդիկ: Այդ դրության յելքն իբր թե միայն մեկն է՝ կրոնականը, վորը մարդկանց համար հայտնված է Քրիստոսի ծնվելով և յերկիր գալով, սակայն այդ յելքն այստեղ, յերկրի վրա չէ, այլ այնտեղ, անդրշիրիմյան աշխարհում, այնտեղ իբր թե գրկված աշխատավորները կարող են, յեթե «արժանի» կլինեն, յերկրում իրենց տառապանքների համար հատուցում գտնել, հանգստանալ իրենց ուժերից վեր չարչարանքից և հավիտենական յերանության վայելել, ժամանակը լիակատար անդորրության մեջ անցկացնելով:

Քրիստոնեական այս ռեակցիոն ուսմունքը, վորը սիստեմատիկաբար, տարեցտարի քարոզել են յեկեղեցականները ծննդյան ու մյուս տոների որերին, սոցիալապես գրկված աշխատավոր մասսաներից

պահանջում էր հաշտվել իրենց դրության հետ, թուլացնում էր նրա կամքը բռնադատիչ շահագործողների դեմ պայքարելու գործում, նրանց շահերի ընթացքը փոխում էր և յերկրից շուռ էր տալիս դեպի յերկինք «անդրշիրիմյան աշխարհի» ցնորական ու պատրանքային կողմը և յերկրային դասակարգային հակասությունների վերջնականապես լուծումն այնտեղ էր փոխադրում: Ցեվ տիրապետող դասակարգերի կողմից ծեծկված, ճնշված, թշվառության և հետամնացության մատնված շատ աշխատավորներ անհուսալիության ու ճարահատության ազդեցության տակ, յենթարկվում էյին այդ ռեակցիոն տերտերական ուսմունքի այլասերող ներգործությանը, հեռու էյին քաշվում դասակարգային պայքարից, մխիթարություն էյին փորոնում կրոնական թմրության մեջ: Կրոնն ու ողին ծննդյան տոնի օրերին ցարիզմի օրով աշխատավորական մասսաների՝ իրենց գոյության անտանելի պայմաններից բղխած տառապանքներն անզգալի դարձնելու, բթացնելու միջոցներ էյին:

Ծննդյան ձմեռային տոների օրերին ռեակցիոն դեր էյին կատարում «փրկչի» ծննդյան



վերաբերյալ ավետարանական հեքիաթները: Այս հեքիաթները յեկեղեցականների մոտ դարձյալ ունեյին իրենց դասակարգային նպատակը՝ հաշտեցնել աշխատավորներին իրենց թշվառության ու տառապանքների հետ, մխիթարել նրանց Քրիստոսի հեքիաթային կյանքից վերցրած օրինակներով, Քրիստոսի, վորն իբր թե չէր խորշել աղքատիկ պայմաններում ապրել և անտրտունջ կրել է այդ աղքատ կյանքը:

Բայց յեկեղեցականներն առանձնապես ուժեղ չափով էյին օգտագործում ավետարանից վերցրած ծննդյան այն լոզունգը, թե՝ «փառք ի բարձունս աստծո, յերկիր խաղաղություն և ի մարդիկ հաճություն»: Այս «փառաբանության» մեջ նրանք դնում են աշխատավորներին ուղղված իրենց ռեակցիոն քարոզի վողջ էյությունը, յերկրայինից՝ հանուն «յերկնայինի» հրաժարվելու թշվառության և իրավազրկության հետ հաշտվելու, դասակարգային պայքարը դադարեցնելու, կարճ ասած՝ շահագործողների իշխանության հանդեպ ստրկական համբերատարության և հնազանդության ցուցաբերելու կոչը:

Ցարիզմը Ռուսաստանում հաշվի յեր

տանում էր համար «Ծննդյան» [illegible] նշանակությունը և ամեն կերպ պաշտպանում էր այն: Ցարական կառավարությունը Ծնունդը պետական տոն էր դարձրել, նրան հատկացրել էր յերեք օր: Այդ ժամանակամիջոցում գրեթե բոլոր հիմնարկություններում դադարեցրել էր պարապմունքները և տոնակատարությանը մասնակից էր դարձրել յերեխաներին ու յերիտասարդությանը, նրանց տալով «Ծննդյան» արձակուրդներ՝ յեկեղեցական բոլոր ժամասացությունները հաճախելու պարտականությամբ:

Ծննդյան տոնը շարունակում է ռեակցիոն դեր կատարել նաև այժմ: Նախ և առաջ, առաջվա նման ուժեղ չափով այն օգտագործում են յեկեղեցականներն ու սեկտանտները կապիտալի յերկրներում աշխատավորներին կրոնով խաբելու համար, նրանց դասակարգային գիտակցությունը մթագնելու համար, նրանց դասակարգային զգոնությունը բթացնելու համար: Այդ տոնի օրերին, նրանք աշխատավորներին ամեն կերպ կոչ են անում հաստատել «խաղաղություն ի վերա յերկրի», մոռացության տալ դասակարգային ատե-



լությունը դեպի կապիտալիստները, դադարեցնել դասակարգային պայքարը:

Իսկ յեկեղեցականներն ու սեկտանտներն այդ ծխածածկույթի տակ շարունակում են ամրացնել իրենց դաշինքը Ֆաշիզմի հետ և սրա հետ միասին պայքարում են համաշխարհային հեղափոխական շարժման դեմ, պաշտպանում են ֆաշիստական ինտերվենցիան՝ Հաբեշստանի, Չինաստանի, Իսպանիայի, Չեխոսլովակիայի դեմ և ակտիվորեն մասնակցում են համաշխարհային նոր պատերազմի և առաջին հերթին խորհրդային Միության դեմ, վորպես հաղթանակող սոցիալիզմի յերկրի դեմ՝ պատերազմ նախապատրաստելուն:

Յեկեղեցականների համաշխարհային ռեակցիայի գլուխ է կանգնել Հռոմի Պապը: Պապն օրհնում էր ֆաշիստական Իտալիայի զորքերին՝ Հաբեշստանի թալանչիական հափշտակման համար: Նա տերտերական իր գործակալության միջոցով, իտալական ու գերմանական ֆաշիստների հետ միասին, օգնում էր վերջիններիս մարդուն՝ դահիճ Ֆրանկոյին՝ Իսպանիայի դաշտերն ու քաղաքներն արյունով ողողելու համար: Նա 1937 թ. մարտին մի

անգամ ևս (այս էլ քանի՛ցս) հանդես յե-
կավ հատուկ նամակով՝ «աթեիստական
կոմունիզմի մասին», որի մեջ համաշ-
խարհային ռեակցիայի բոլոր ուժերի
կոչ է անում համատեղ պայքարելու կո-
մունիստական շարժման ու պրոլետարա-
կան անաստվածության դեմ:

Ֆրանսիայում հրատարակվող «Լա Ֆը-
րանս Կատոլիկ» կաթոլիկական թերթը
գերմանական ֆաշիզմի և Պապի հրահանգ-
ներով պայքարում է կոմունիստական կու-
սակցության, պրոֆմիությունների և ժո-
ղովրդական ճակատի դեմ տարածում է
Տրոցկու նողկալի պասկվիլները, որոնք
գրվել են ԳԵՍՏԱՊՈՅԻ թելադրանքով ու
դրամներով: Միջազգային հակախորհրդա-
յին «Պրո Դեո» («Հանուն աստծո») լիգայի
կազմակերպիչներից մեկը՝ ավստրիական
կարդինալ Իննիցերը Հիտլերին օգնում էր՝
«Ավստրիան միացնելու»:

Չեխոսլովակիական յեպիսկոպոսները
հանուն գերմանական ֆաշիզմի շահերի
հանդես եյին գալիս ժողովրդական ճակա-
տի դեմ: Ճապոնական ինտերվենտներին
Չինաստանում օգնում են կաթոլիկ միս-
սիոներները: Ֆաշիստացող միլիոներ Ջոն



դալլս «Քրիստոսի յեկեղեցին Ամերիկա-
յում» միություն ստեղծելու մի կոչով,
քրիստոնեական բարոյականությունը խախ-
տող «մատերիալիզմի ու հեղափոխական
Ռոկֆելլեր կլոսսերն ԱՄՆ-ում հանդես է
հոսանքների դեմ» պայքարելու համար:

Յեկեղեցականների այսպիսի բացահայտ
ռեակցիոն գործունեյության օրինակները
կապիտալի յերկներում բազմաթիվ են:
Յեկեղեցական խավարամոլների ռեակցիոն
գործունեյությունն առանձնապես ուժե-
ղանում է «ծննդյան», «զատկական» և
կրոնական մյուս տոների որերին: Այս
բոլոր տոները կապիտալիստական Արևմ-
մուտքում համաշխարհային ռեակցիայի
և ֆաշիզմի զենքերից մեկն են:

«Ծնունդը» ամենառեակցիոն դեր է կա-
տարում դեռևս Խորհրդային Միությու-
նում: Հոկտեմբերյան Սոցիալիստական
Մեծ Հեղափոխության հաղթանակը և սո-
ցիալիստական շինարարության հսկայա-
կան նվաճումները մեր յերկրում վոչնչաց-
րել են կրոնն ու կրոնական տոներն առա-
ջացնող ու պաշտպանող սոցիալական ար-
մատները: Միլիոնավոր աշխատավորներ,
սոցիալիզմի հաղթանակների հետևանքով,

նրանց նյութական ու կուլտուրական հսկայական չափերով աճած մակարդակի հետևանքով, ընդմիշտ կապերը խզել են կրոնական նախապաշարմունքների հետ և կրոնական հին կենցաղի հետ: Սակայն սրան զուգահեռ դեռևս կան աշխատավորների առանձին խմբեր, վորոնք գերի յեն մնում կրոնական նախապաշարմունքներին, պահպանում են հին կենցաղի մնացուկները: Այդ նրանով է բացատրվում, վոր կրոնը, վորպես քարացած, պահպանողական իդեոլոգիա, ավելի դանդաղ է հաղթահարվում գիտակցության և կենցաղի մեջ, ավելի դժվար է արմատախիլ արվում այնտեղից: Այս վերաբերում է վողջ կրոնին ընդհանրապես, «ծննդյանը» և մյուս կրոնական տոներին՝ մասնավորապես:

«Ծննդյան» տոնը մեր յերկրում հին, կապիտալիստական անցյալի ամենավտանգավոր մնացուկն է: Ընկեր Ստալինն ասում է, վոր. «Կրոնական նախապաշարմունքները գիտության դեմ են գնում, վորովհետև յուրաքանչյուր կրոն գիտության հակադիր մի բան է: (Ի. Ստալին,



«Լենինիզմի հարցեր», Կուսհրատ, 1935 թ., եջ՝ 246):

«Ծննդյան» տոնն իր ամբողջ վայրենական, հակագիտական բովանդակությամբ կեղտոտում է հավատացյալ աշխատավորների ուղեղներն ու կենցաղը, խանգարում է այդ աշխատավորներին կուլտուրականորեն զարգանալու:

Աշխատավորների համար հատկապես վտանգավոր են յեկեղեցականների և սեկտանտների ծննդենական կեղծավոր կոչերը, թե՝ «խաղաղություն ի վերա յերկրի», «յերկիր խաղաղություն և մարդկանց մեջ հաճություն» լոզունգները նկատի յեն առնված, վորպեսզի բթացնեն աշխատավորների դասակարգային զգոնությունը, նրանց հեռու պահեն դասակարգային պայքարից:

Յեկեղեցականներն իրենց ռեակցիոն պրոպագանդան առանձնապես ուժեղ չափերով են ծավալում ծննդյան որերին, ոգտագործելով հավատացյալների վրա այդ տոնի ունեցած ռեակցիոն ազդեցությունը, ուստի յեկեղեցականներն ու իրենց գործակալությունն ագիտացիա յեն մղում հանուն ծննդյան տոնակատարության, հա-

վատացյալներին կոչ են անում այդ տոնը կատարելու:

Ծնունդը տոնելու համար յեկեղեցականների մղած ագիտացիան իր մեջ թաքցնում է նաև վնասարարական այլ նպատակներ, վորոնք ուղղված են վերջին հաշվով մեր յերկրի հզորության թուլացմանը:

Ցեկեղեցականներն ու նրանց կողմնակալները հաշվի յեն առնում, վոր «Ծնունդը» աշխատավորների անկայուն խմբերին հեռու յե պահում աշխատանքից, հաճախ առաջացնում է գործալքումներ, իջեցնում է աշխատանքի տեմպերն ու վորակը և այլն, և այլն:

Ահա, օրինակ՝ թե ի՞նչ է հաղորդում Անտիրելիգիոզնիկ» ժուռնալը (1938 թ. № 5, եջ՝ 53) 1937 թ. Ցելաբուգի (Թաթարիա) շրջանում ծննդյան տոնակատարության մասին:

«Ցելաբուգից ընդամենը մեկ՝ կիլոմետր հեռավորության վրա գտնվող վոգջ Պերվոմայսկի կոլտնտեսությունը «ծննդյան» տոն կատարեց և 4 օր չաշխատեց: Մ. Գորկու անվան հարևան կոլտնտեսության նախագահ Բուսիգինը 1938 թ. հունվարի7–10-ը («ծննդյան օրերին») նույն-



պես վոչ մի աշխատանքի կարգադիր չըրավեց: Ամբողջ կոլտնտեսությունը «ծընընդյան» տոնն եր կատարում: Սվինոգորյե գյուղում գյուղխորհրդի նախագահ Սելիվանովը, քարտուղար Պոնկինը, կոլտնտեսության նախագահ Ստոզովը և հաշվետար Գալյանովը «ծննդյան օրերին» 5 օր ըզբաղվում եյին հարբեցողությամբ:

Այս փաստերը դժբախտաբար ամենևին ՛յեզակի չեն:

Մեր պարտականությունն այն է, վորպեսզի խորացրած հակակրոնական պրոպագանդայով հավատացյալ աշխատավորներին ոգնենք ազատագրվելու կրոնական նախապաշարմունքներից, հասկանալու կրոնի, «ծննդյան» և կրոնական մյուս տոների... ռեակցիոն եյությունը և աշխատավորների առաջ յեկեղեցականների ռեակցիոն դերն ու գործնեությունը մերկացնենք: Մեր խնդիրը նաև այն է, վորպեսզի ոգնենք աշխատավորներին յուրացընելու Մարքսի–Ենգելսի–Լենինի –Ստալինի մեծ ուսմունքը, յուրացնելու մեր սոցիալիստական հասարակարգի նոր կոմունիստական բարոյանականությունը:

# ՔՐԻՍՏՈՍԻ ԾՆՆԴՅԱՆ ԿՐՈՆԱԿԱՆ ՏՈՆԵՐԻ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ՀԱԿԱԿՐՈՆԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ ՏԱՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Ս. Թ. դեկտեմբերին և 1939 թվի հունվարին յեկեղեցական և սեկտանտական (աղանդավորական) կազմակերպությունները կատարում են մի շարք կրոնական տոներ՝ Քրիստոսի ծնունդը, մկրտությունը և այլն, վորոնք ռեակցիոն նշանակություն ունեն:*

*Յեկեղեցական և սեկտանտական պարագլուխները, ինչպես և սոցիալիզմին թշնամի բոլոր մյուս տարրերը, ձգտելու յեն այդ կրոնական տոներն օգտագործելու՝ սոցիալիստական շինարարության կոնկրետ խնդիրներից, սոցիալիզմի թշնամիների դեմ մղվող պայքարից հավատացյալ աշխատավորների ուշադրությունը շեղելու, հեռացնելու նպատակներով: Ուստի*



*ՄԱՄ-ի բոլոր կազմակերպությունները կրոնական այդ տոների օրերին պետք է առավել ևս ուժեղացնեն հակակրոնական աշխատանքները հավատացյալ աշխատավորների հետ, ծավալեն անհատական հակակրոնական ագիտացիան՝ առանձնապես տնային տնտեսուհիների մեջ, պետք է մերկացնեն դրանց առաջ կրոնի և կրոնական կազմակերպությունների հակահեղափոխական դերը, կրոնական տոների և այլ մնացուկների վնասը:*

*Հանրակացարաններում, տնային վարչություններում, ընտանիքներում հարկավոր է կազմակերպել սիստեմատիկ հակակրոնական զրույցներ, գեղարվեստական, հակակրոնական գրականության բարձրաձայն ընթերցում, կազմակերպել եքսկուրսիաներ դեպի հակակրոնական և գավառագիտական թանգարանները և այլն:*

*Համբերատար և համառ բացատրական հակակրոնական աշխատանքով անհրաժեշտ է հավատացյալներին օգնել՝ կրոնից հեռանալու և սոցիալիզմի շինարարության ակտիվ մասնակցություն ցույց տալու, ՄԱՄ-ի կազմակերպությունները պետք է հակակրոնական աշխատանքը շաղկապեն*

կուսակցության կողմից բնակչության մեջ տարվող ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքի հետ:

ԽՍՀՄ ՄԱՄ-ի Կենտխորհուրդը հանձնարարում է հակակրոնական դասախոսությունների, զեկուցումների և զրույցների հետևյալ թեմատիկան.

1. Ստալինյան Սահմանադրությունն ու պայքարը կրոնի դեմ:

2. Կրոնն ի սպաս կապիտալիզմին և ֆաշիզմին:

3. Քրիստոնեության ծագումը:

4. Կրոնական տոների ռեակցիոն էությունը:

5. «Քրիստոսի ծննդյան» ծագումն ու ռեակցիոն դերը:

6. Քրիստոսի վերաբերյալ առասպելը, նրա ծագումն ու դասակարգային էությունը:

ՄԱՄ-ի քաղաքային ու շրջանային խորհուրդները Քրիստոսի ծննդյան կրոնական տոների կապակցությամբ տարվող վողջ հակակրոնական աշխատանքը պետք է ամրացնեն տնային վարչություններին և նրանց կից ՄԱՄ-ի նոր բջիջներ, հակակրոնական խմբակներ կազմակերպելով,



բնակչության մեջ սիստեմատիկաբար հակակրոնական դասախոսություններ ու զրույցներ կազմակերպելով:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1-ԻՆ ԹԵՄԱ.— Ստալինյան Սահմանադրությունն ու պայքարը կրոնի դեմ.

1. ԽՍՀ Միության Սահմանադրությունը (Հիմնական օրենքը), Կուսհրատ, 1936 թ.:

2. Ի. Վ. Ստալին՝ Զեկուցում ԽՍՀ Միության Սահմանադրության նախագծի մասին, 1936 թ.:

3. Ի. Վ. Ստալին՝ Կուսակցական աշխատանքների թերությունների և տրոցկիստական ու այլ յերկերեսանիներին լիկվիդացիայի յենթարկելու միջոցառումների մասին, Կուսհրատ, 1936 թ.:

4. Յեմ. Յարոսլավսկի՝ Ստալինյան Սահմանադրությունն ու կրոնի հարցը, ԳԱԻԶ, 1936 թ.:

5. Բ. Կանդիդով՝ յեկեղեցին և լրտեսությունը, ԳԱԻԶ, 1938 թ.:

6. Ց. Ոլեշչուկ՝ Հակակրոնական պրոպագանդայի մարտական հարցերը, «Բոլշևիկ» ժուռնալ, 1938 թ., № 16:

7. Հակակրոնական պրոպագանդը ներկա շրջանում (ժողովածու), Պետհրատ, 1937 թ.:

2-ՐԴ ԹԵՄԱ.— Կրոնն ի սպաս կապիտալիզմին ու ֆաշիզմին.

1. «Անտիռելիգիոզնիկ» ժուռնալ, 1938 թ., № 7 Միխնևիչի հոդվածը՝ «Եկեղեցին ի սպաս՝ պատերազմի ֆաշիստական հրձիգների»:

2. Մ. Շեյնման՝ «Ովքե՞ր են Հռոմի պապերը և ո՞ւմ են նրանք ծառայում:

3. Հակակրոնական դասագիրք, ԳԱԻՁ, 4-րդ գլուխ, 1938 թ.:

3-ՐԴ ԹԵՄԱ.— Քրիստոնեության ծագումը.

1. Կ. Մարքս՝ 5 հատ., «Կոմունիզմի Հռենոսյան տեսաբանը»:

2. Ֆ. Էնգելս՝ Նախնական քրիստոնեության պատմության առթիվ (16-րդ հ., 2-րդ մաս): Նախնական քրիստոնեության մասին (15-րդ հատ.):

Ֆ. Էնգելս՝ «Բրունո Բաուերը և նախնական քրիստոն.», հատ. 15-րդ:

3. Վ. Ի. Լենին՝ Սոցիալիզմն ու կրոնը.



հոդվածների ժողովածու, Համկ(բ)Կ Կուսհրատ, 1937 թ., կամ Երկերի ժողովածու, հատ. 8:

4. Մ. Գորկի՝ Կրոնի մասին: ժողովածու, «Մոլոդայա գվարդիա», 1937 թ.:

5. Ի. Կրիվելյով՝ Ավետարանների մասին ճշմարտությունը, ԳԱԻՁ, 1936 թ..

6. «Հրով ու ու սրով հանուն աստծո», կինո-ժապավենային դիապոզիտիվների սերիա:

Մարտնչող Անաստվածների Միության Կենտրոնական Խորհուրդ, 1938 թ.:

7. Հակակրոնական դասագիրք, ԳԱԻՁ, 1938 թ., 10-րդ գլուխ:

4-ՐԴ ԹԵՄԱ.—Կրոնական տոների ռեակցիոն էությունը:

1. Լենին՝ Սոցիալիզմ և կրոն, 1937 թ.:

2. Եմ. Յարոսլավսկի՝ Ինչպես են ծնվում, ապրում ու մեռնում աստվածները, 1937 թ.:

3. Եմ. Յարոսլավսկի՝ «Աստվածաշունչ հավատացյալների և վոչ հավատացյալների համար», 1937 թ.:

4. Հակակրոնական պրոպագանդան ներկա շրջանում, 1938 թ., Պետհրատ:

5. *Հակակրոնական դասագիրք՝ ԳԱԻԶ*, 1938 *թ.*, *գլուխ* 7:

5-ՐԴ ԹԵՄԱ.— «Քրիստոսի ծննդյան» ծագումն ու ռեակցիոն դերը.

1. *Յեմ. Յարոսլավսկի՝ Ինչպես են ծընվում, ապրում և մեռնում աստվածները*, *ԳԱԻԶ*, 1938 *թ.*:

2. *Ռումյանցև՝ «Քրիստոսի ծնունդը», նրա ծագումն ու դասակարգային դերը»*, *ԳԱԻԶ*, 1937 *թ.*:

3. *Հակակրոնական դասագիրք*, *ԳԱԻԶ*, 1938 *թ.*, 10-*րդ գլուխ*:

6-ՐԴ ԹԵՄԱ.— Քրիստոսի վերաբերյալ առասպելը, նրա ծագումն ու դասակարգային նյությունը.

1. *Ռումյանցև՝ «Քրիստոսի ծնունդը, նրա ծագումն ու դասակարգային դերը»*:

2. *Հակակրոնական դասագիրք*, *ԳԱԻԶ*, 1938 *թ.*, 10-*րդ գլուխ*:

3. *Քրիստոսի վերաբերյալ առասպելը*: *Ֆոտո-սերիա*, *ԽՍՀՄ ՄԱՄ-ի Կենտխորհրդի* 1936 *թ. հրատ.*:

4. *Քրիստոսի վերաբերյալ առասպելը*, *նրա ծագումն ու դասակարգային նյությունը*: *Կինո-ժապավենային դիապոզիտիվներ*, 1938 *թ. հրատ.*:



*Բացի մատնանշված նյութերից զրույցների և ընթերցումների համար անհրաժեշտ է օգտագործել «Բեզբոժնիկ» ժուռնալը, «Բեզբոժնիկ» թերթը և «Անտիռելիգիոզնիկ» ժուռնալը*:

*Հավելված*.— 1. *Զեկուցման թեզիսներ՝ «Քրիստոսի ծննդյան» տոնի ծագումն ու ռեակցիոն դերը»*: (*Տես «Ագիտատորի բլոկնոտի ներկա համարը*):

# ՀԻՏԼԵՐԻ ԻՍԿԱԿԱՆ ՏԵՐԵՐԸ

Ֆաշիստական ռեժիմը Գերմանիայում ծառայում է խոշոր կապիտալի շահերին: Ահա մի բնորոշ փաստ:

1934 թ. փետրվարին ստեղծվեց ֆաշիստական Գերմանիայի գերագույն տնտեսական խորհուրդը: Խորհրդի ղեկավար անդամների թվում էին գտնվում հետևյալները.

Կրուպպ ֆոն Բոլեն, թնդանոթների թագավորը, անձնական կապիտալն է 120 միլիոն մարկ, նրա վերահսկողության կամ ազդեցության տակ գտնվող ձեռնարկությունների կապիտալն է 300 միլիոն մարկ:

Ֆրից Տիսսեն, պողպատի թագավորը. անձնական կապիտալն է 120 միլիոն մարկ, իր վերահսկած ձեռնարկությունների կապիտալն է 1.100 միլիոն մարկ:

Ֆոն Սիմմենս, էլեկտրականության թա-



գավորը. անձնական կապիտալն է 130 միլիոն մարկ, վերահսկած ձեռնարկությունների կապիտալն է 250 միլիոն մարկ:

Կարլ Բոշ, քիմիայի թագավորը. անձնական կապիտալն է 40 միլիոն մարկ, վերահսկած ձեռնարկությունների կապիտալն է 1.100 միլիոն մարկ:

Ա. Ֆոգլեր, պողպատի տրեստի պարագլուխը. անձնական կապիտալն է 120 միլիոն մարկ, վերահսկած ձեռնարկությունների կապիտալն է 800 միլիոն մարկ:

Այս տվյալները վերաբերում են 1934 թ.: Այն ժամանակվանից ի վեր այս պարոնների թե՛ անձնական կապիտալները և թե՛ նրանց վերահսկած ձեռնարկությունների կապիտալները բազմաթիվ միլիոններով աճել են: Նույնիսկ ըստ «պաշտոնական», շատ նվազեցրած տվյալների սրանց շահույթներն ավելացել են 55 տոկոսով: 1933 թ. 50 խոշոր ընկերություններ իրենց հաշվեկշիռներում ցույց են տվել 85 միլիոն մարկ շահույթ, իսկ 1937 թ.՝ 132 միլիոն:

Խոշոր կապիտալը միահեծան կերպով իշխում է Գերմանիայում: Համաշխարհային պատերազմի ժամանակ հաշվում էին, որ Գերմանիայի ճակատագիրը տնօրինում են

300 խոշոր կապիտալիստներ, 1930 թ. Գերմանիայում խոշոր կապիտալիստների թիվը հաշվվում էր յերկու անգամ պակաս՝ մոտ 140: 5 տարվա ֆաշիստական դիկտատուրայից հետո խոշոր կապիտալը կենտրոնացել է 50—60 մարդու ձեռքում: Սրանք էլ հենց կառավարում են Գերմանիան:

1933 թ. Գերմանիայում մենաշնորհված էր, այսինքն աննշան թվով խոշորագույն կապիտալիստների ձեռքում էր կենտրոնացած արդյունաբերական ամբողջ արտադրանքի մինչև 40 տոկոսը: 1938 թ. սկզբին մենաշնորհված էր արդյունաբերական արտադրանքի արդեն 70 տոկոսը:

Գերմանական բոլոր բանկերի հաշվեկշիռները (բալանսները) 1938 թ. սկզբին կազմում եյին 23 միլիարդ մարկ: Այս կապիտալի 83 տոկոսը կենտրոնացած էր Բեռլինի չորս խոշորագույն բանկերում: Պարզ է, վոր չորս բանկի համար հեշտ է կառավարության քաղաքականության վրա ազդելը: Պարզ է, վոր նրանց ազդեցությունը կառավարության գործողությունների ու քաղաքականության վրա պետք է ճնշող լինի: Սրանց ձեռքումն է գտնվում դրամական ամբողջ շրջանառությունը, ամբողջ վար-



կը, գյուղատնտեսությունը, ամբողջ խոշոր արդյունաբերությունը, ամբողջ արտահանությունն ու ներմուծումը:

Ի հաճույս խոշոր կապիտալի Հիտլերը 1937 թ. անցկացրեց նոր որենք ակցիոներական ընկերությունների մասին, վորի համաձայն 100 հազար մարկից պակաս կապիտալ ունեցող բոլոր ակցիոներական ընկերությունները պետք է լիկվիդացիայի յենթարկվեն: Այսպիսով ակցիոներական բոլոր մանր ընկերությունները վոչնչացվեցին: Նոր ընկերությունները պետք է ունենան առնվազն կես միլիոն մարկ: Ընկերությունների կապիտալների տնորինումը ամբողջովին գտնվում է դիրեկտորների ձեռքում, վորոնք նշանակվում են փաստորեն բանկիրների ու խոշոր կապիտալիստների կողմից: 1937 թ. որենքն այսպիսով 4 բանկի և 50 խոշորագույն կապիտալիստների անկոնտրոլ տնորինության տակ դրեց Գերմանիայի ամբողջ կապիտալը: Պետք է նկատի ունենալ, վոր բանկերում ու տրեստներում գործում են միևնույն մարդիկ:

Ի հաճույս խոշորագույն կապիտալիստների միայն 1936 թ. վոչնչացվեց 136 հա-

գար մանր արդյունաբերական ձեռնարկություններ։

Հիտլերները, Գյորինգները, Հեբբելսները ծառայում են կապիտալիստներին և կապիտալիստները նրանց ծառայությունները չեն մոռանում։ Նրանք լավ վճարում են։ Գյորինգն արդեն ինքը խոշոր կապիտալիստ է համարվում։ Սրա յեղբայր Հերբերտը նիստ է ունենում խոշոր ընկերությունների մի շարք վարչություններում և յեռանդով պաշտպանում է Գյորինգների «դինաստիայի» շահերը։ Նույնպիսի դեր է կատարում Գյորինգի մի այլ ազգական Բրասսերտը։ Հեբբելսի ֆինանսական գործերը տնօրինում է կապիտալիստ Գյունտեր Կվանդտը, վորը նիստեր է ունենում խոշոր ընկերությունների մի շարք վարչություններում։ Կվանդտի միջոցով Հեբբելսը 300 հազար մարկի գնել է Շվանենվերդեր հիանալի դղյակը, վորը գնահատվում է մի քանի միլիոն մարկ։ Հիտլերի գործերը տնօրինում է Մյունխենի բանկիր Ավգուստ ֆոն Ֆինկը։ Հիտլերի այս «բարեկամի» ձեռքն են անցել «Դրեյֆուս ու ընկերություն» հրեական խոշոր բանկի կապիտալները։ Բանկիր Ֆինկը նիստեր է ունենում



պողպատի ու քարածխի ձեռնարկությունների ու բանկերի վարչություններում, վորտեղ նա ներկայացնում է Հիտլերի մասնավոր ֆինանսական շահերը։ Հիտլերի մի ուրիշ «բարեկամն» է հանդիսանում հայտնի բանկիր Շրեդերը, վորը նույնպես նրա անձնական առևտրական գործերն է վարում։ Հիտլերը գերմանական խոշորագույն «Շերլ» հրատարակչական ընկերության տիրակալը, գերմանական լրագրային խոշորագույն հրատարակչության տիրակիցն է և այլն։ Այս բոլոր ձեռնարկությունները, ինչպես հաղորդում է «Վուա դյու Պեպլ»-ը, միլիոնների շահույթ են բերում։

Հարուստները, և մանավանդ նրանց մեջ ամենահարուստները, քանի գնում այնքան ավելի յեն հարստանում։ Ահա թե ինչու նրանք աջակցում են Հիտլերին։ Հիտլերը նրանց ոգնում է շահելու ի հաշիվ գերմանական ժողովրդի քայքայման։ Քաղաքներում հարյուր հազարավոր ձեռնարկատերեր քայքայվել են։ Քայքայվել են հարյուր հազարավոր մանր ու միջակ գյուղացիներ։ Վատթարացել է միլիոնավոր բանվորների դրությունը։ Աշխատավարձի

դրույքները իջել են 25-ից մինչև 30 տոկոսի սահմաններում: Բանվորական որը յերկարացվել է 10 տոկոսով: Գործարանային ինսպեկցիայի 1937 թ. հաշվետվության համաձայն մետաղարդյունաբերության մեջ բանվորական հերթափոխը հավասար է յեղել 10 ժամի, իսկ շինարարություններում հասել է մինչև 15 և նույնիսկ 16 ժամի: Առաջին անհրաժեշտության առարկաների գները խիստ բարձրացել են: Յեվ թանկացումը տեղի յե ունեցել ֆաշիստական ռեժիմի բոլոր տարիների ընթացքում չնայած արտադրանքի վորակի մշտական վատթարացմանը և կեղծված պարենային մթերքների ու գործարանային շինվածքների արտադրմանը:

Այսպիսի դրությունը չի կարող առաջ չբերել գերմանական ժողովրդի լայն մասսաների դժգոհությունը, զայրույթն ու վրդովմունքը: Խոշոր կապիտալն ու նրա ֆաշիստական գործակալությունն այս մասին գիտեն: Այդ պատճառով էլ նրանք արտաքին քաղաքական ագրեսիաների կարիք են զգում: Այդ պատճառով էլ նրանք զզվելի ջարդեր են սարքում, «Հրեաների դեմ ուղղված ջարդերի վայրենի բռնկու-



մը պարզ կերպով ցույց է տալիս, վոր գերմանական ֆաշիզմը «շանթարգելի» մեծ կարիք է զգում: Նրանք ձեռք են զցում ամենազզվելի միջոցների, վորպեսզի թաքցնեն իրենց անկայունությունն ու ներքին թուլությունը: Այնտեղ, վորտեղ պետական իշխանությունը ձեռք է զցում ջարդերի, յերևում է նրա մոտիկ վախճանը: («Պրավդա»):



Պատ. խմբագիր՝ Գ. ՍԻՆԱՆՅԱՆ

ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ՝ Ա— 4141
Պատվ. № 964. ստորագրված է տպագրության 30 դեկտ., 1938 թ.
Տիրաժ 6789

ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԺԿԽ-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅԱՆ «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՏՊԱՐԱՆ, ԵՐԵՎԱՆ

## ՈՒՂՂՈՒՄ

«Ագիտատորի Բլոկնոտ»-ի նախորդ համարում (23 (53) 28-րդ էջում տպված է՝

«Հայաստանի աշխատավորության պայքարն ու հաղթանակները 19-րդ դարի ըսկըզբից ամբողջապես կապված է հայ ժողովրդի ամենամոտիկ բարեկամ, Լենինի զինակից, ժողովուրդների առաջնորդ Մեծ Ստալինի անվան հետ»։

ՊԵՏՔ Է ԼԻՆԻ

«...19-րդ դարի վերջերից...» այնուհետև ինչպես տեքստում։

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի խմբագրությունը տեղափոխվել է ընկ. Բերիայի անվան պրոպագանդիստի և ագիտատորի տունը։